ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻՆ ԱՌԸՆԹԵՐ
ՄԱՇՏՈՑԻ ԱՆՎԱՆ ՀԻՆ ՁԵՌԱԳՐԵՐԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ—«ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ»

ԲԱՆԲԵՐ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆԻ

ԵՐԵՎԱՆ № 11 1973

ՊԱՐՈՒՅՐ ՄՈՒՐԱԴՅԱՆ, ԿԱՐԵՆ ՅՈՒԶԲԱՇՅԱՆ

# ՂԱԶԱՐ ՓԱՐՊԵՑՈՒ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՆՈՐԱՀԱՅՏ ՊԱՏԱՌԻԿԸ

Ղազար Փարպեցու «Պատմություն Հայոց»-ն ունեցել է վեց հրատարակություն (1793, 1873, 1891, 1904, 1907, 1933 թվականներին), ընդ որում 1873 թվականի տպագրությունը կատարվել է Ղ. Ալիշանի, իսկ 1904-ը՝ Գ. Տեր-Մկրտչյանի և Ստ. Մալխասյանցի ձեռքով[1]։ Ղ. Ալիշանը անհրաժեշտ է նկատել զգուշացնել, որ «և ոչ միոյ յետ այնորիկ (իմա՝ 1793 թ. հրատարակությունից) հանդիպեալ մեր նորոյ օրինակի Պատմութեանս, հարկաւորիմք ըստ առաջնոյն կրկնել զտպագիրս զայս... սակաւ ուրեք ի յայտնի վրիպակսն՝ արտաբեալ ուղղութիւն և յերկս տրոհեալ Դրուագս զբովանդակ գիրսն...»։ Եվ իրոք, հմուտ բանասերը նկատել և ուղղել է տասնյակ վրիպում-աղավաղումներ, իսկ Պատմության «Տեսիլն ս. Սահակայ» և նրա մեկնության հատվածը խմբագրել-կազմել է «ըստ հնագոյն օրինակաց, որ ի ճառընտիրս գտանին»։ Այս տպագրությունը 1891 թ. վերահրատարակվեց առանց խոշոր փոփոխությունների «Քանզի յետ նախընթաց (իմա 1873 թ.) տպագրութեան մատենիս ոչ յայտնեցաւ մեզ նոր ձեռագիր, ոչ ինչ և նոր ունիմք աւանդել...»։ Միակ նորույթը այն էր, որ «արարաք տեղափոխութիւն գլխոց կամ հատուածոց ինչ ի սկզբան Պատմութեանն, որ յէջս 7—14 երկրորդ տպագրին»։ Այսպիսով, հիշյալ երեք տպագրությունները հենված են մեկ ձեռագրի վրա, հրատարակիչների ներմուծած սրբագրությունների հավելումով։

Նախորդների համեմատությամբ խոշոր առաջընթաց կատարվեց չորրորդ տպագրությամբ։ Բանասեր Գալուստ Տեր-Մկրտչյանը մինչև այդ հանգամանորեն ուսումնասիրել է Փարպեցու Պատմության ձեռագրերն ու նրանց հարաբերակցությունը միմյանց և անդրանիկ տպագրին[2], պարզել նրանց մայր օրինակը։ Պակաս նախնական աշխատանք չէր կատարել և հրատարակության երկրորդ աշխատասիրողը՝ Ստ. Մալխասյանցը. նա մինչ տպագրության երևան գալը հրապարակել էր մի շարք արժեքավոր սրբագրություններ։ Անվանի հա-

[1] ա. Ղազարայ Փարպեցւոյ արարեալ Պատմութիւն, տպագրեալ յամի տեառն 1793, ի Վենետիկ։

բ. Ղազարայ Փարպեցւոյ Պատմութիւն Հայոց և Թուղթ առ Վահան Մամիկոնեան, Վենետիկ, 1873 [ի ձեռն Ղ. Ալիշանի]։

գ. Նոյնը, Վենետիկ, 1891։

դ. Ղազարայ Փարպեցւոյ Պատմութիւն Հայոց և Թուղթ առ Վահան Մամիկոնեան, աշխատութեամբ Գ. Տէր-Մկրտչեան և Ստ. Մալխասեանց, Տփղիս, 1904։

ե. Նոյնը, Թիֆլիս, 1907։

զ. Ղազարայ Փարպեցւոյ Պատմութիւն Հայոց և Թուղթ առ Վահան Մամիկոնեան, Վենետիկ, 1933 [ի ձեռն Հ. Գրիգոր Սարգսեանի]։

[2] Ղազար Փարպեցու ձեռագրերը, «Արարատ», 1901, էջ 542—549, համտ. Նույնի՝ Խորենացու Պատմության ուսումնասիրություն, «Արարատ», 1891, էջ 147—155։

յակետների տպագրությունը հենված էր, հիմնականում, էջմիածնի մատենադարանի երկու ձեռագրի վրա՝ № 611 և № 1688, որոնք այժմ գտնվում են Երևանի Մատենադարանում և կրում են 2639 և 1891 թվահամարները[3]։ Հրատարակիչները նկատի են առել նաև Ղ. Ալիշանի որոշ սրբագրումները, երբ ճիշտ չեն համարել իրենց երկու ձեռագրի տված ընթերցումը՝ մանավանդ Սահակի տեսիլի բաժնում։ Գ. Տեր-Մկրտչյանի ուսումնասիրությամբ և 1904 թ. հիշյալ տպագրությամբ հայագիտության մեջ պարզվեց էական մի հարց. Փարպեցու Պատմության անդրանիկ տպագրության հիմք-ձեռագիրը ընդօրինակված է էջմիածնի № 1688-ից (այժմ՝ № 1891), իսկ վերջինս էլ՝ նույն Մատենադարանի՛ № 611-ից (այժմ՝ № 2639), որոշ հավելումներով ու լուսանցագիր սրբագրություններով։ Ուրեմն, Փարպեցու Պատմության թվարկած բոլոր հրատարակությունների հիմքում ընկած է մեկ մայր օրինակ՝ իր երկու ընդօրինակությամբ (Վենետիկի անդրանիկ տպագրության ձեռագիր և Մատենադարանի այժմյան № 1891), իսկ այդ մայր օրինակը (№ 2639) գրված է 1672 թվականին (ճիշտը՝ մի քանի տարի անց), Բաղեշում Գրիգոր երեցի ձեռքով (ստացող՝ Վարդան եպս. Բաղիշեցի)։ 1904 թ. հրատարակության գրախոսության առիթով բանասեր Բ. Սարգսյանը կրկին անդրադարձավ առկա ձեռագրերի փոխանջությանը[4]։ Նրա հոդվածից պարզ դարձավ, որ Վենետիկում կա Փարպեցու Պատմության երեք ձեռագիր (№ 1206, 1088, 129), ընդօրինակված 1781 (№ 1088), 1782 (№ 1206) և 1784 (№ 129) թվականներին։ Գրչագրերից երկուսը (№№ 1088 և 1206) գրված է Գևորգ Պալատեցի Տեր-Հովհաննիսյանի ձեռքով, իսկ երրորդը (№ 129) ընդօրինակված է հիշյալ № 1206-ից։ Ընդ որում, ըստ Բ. Սարգսյանի ապացույցների, վերջինս էլ հենց հիմք է դարձել վենետիկյան անդրանիկ տպագրության։ Վենետիկի № 1088 ձեռագիրը ընդօրինակված է էջմիածնում (1781 թ.), մինչ № 1206-ի ընդօրինակման տեղն ու մայր օրինակն անհայտ է, իսկ Բ. Սարգսյանի եզրակացությամբ այն կա՛մ № 1088-ից է արտագրված, կա՛մ «լաւ եւս՝ երկուքն ալ իրարմէ տարբեր գրչագրերէ ընդօրինակուած են»[5]։ Այսպիսով, իրականությունն այն է, որ Փարպեցու Պատմության հնագույն օրինակը, ցույց և առ այսօր եղածների մայր օրինակը, 1672 թվականին ընդօրինակվածն է (Մատենադարան № 2639), որի հիմքում ընկած է եղել մի «հին աւրինակ», նորոգվելուց հետո էլ՝ պակասավոր[6]։

1904 թ. հրատարակության աշխատասիրողները իրենց կազմած բնագիրը վերջնական չեն համարել և գրել են. «Ընթերցողին մնում է հավատալ մեր հավաստիացմանը, մինչև որ լույս տեսնի Փարպեցու մի նոր քննադատական հրատարակություն...»[7]։ Հիրավի, Բ. Սարգսյանի և Ն. Բյուզանդացու գրախոսություն-քննությունները ցույց տվին, որ այդ հրատարակությունը կամա թե ակամա՝ սխալաշատ է, Բյուզանդացու խոսքով «կատարեալ ուսումնասիրութիւնն կարող էր սրբագրել գրեթէ 400 անգամ, միտ դնելով մատենա-

3 Նոր հրատարակությանը նշանակալի նպաստ բերեց և Ն. Բյուզանդացու քննությունը (տե՛ս նրա՝ Ղազար Փարպեցւոյ Պատմութեան հայոց Յառաջաբան, փորձ կարգադրման յետեւեալ հատուածոյն և ցուցումն տեղեաց, յորս թուղթ անկեալ է ի սկզբնագիր օրինակէն, «Լումա», 1896, գիրք Բ, էջ 309—328)։

4 Բ. Սարգիսյան, Երկու խօսք Ղ. Փարպեցւոյ նոր տպագրութեան առթիւ, «Բազմավէպ», 1905, էջ 52—62, 129—133։

5 Բ. Սարգիսյան, նշվ. աշխ., էջ 58։

6 Հիշատակարանը տե՛ս 1904 թ. հրատ. Առաջաբանում, էջ Ե։

7 Նույն տեղում, էջ Է։

գրին լեզուին յատկութեանց եւ պատմութեան ընթացքին»[8]։ Բայց միաժամանակ նկատելու է, որ «միտ դնելով» անհնար էր հարթել Առաջաբանի ու Ա գրքի բացորոշ հետևառաջությունները, ակներև ընդհատումները և այլն։ Գ. Տեր-Մկրտչյանի և Ստ. Մալխասյանցի հրատարակությունը կոչված էր խթանելու ապագա բնագրագիտական աշխատանքը։ Եվ իրոք, 30-ական թվականներին այդ դժվարին գործն ստանձնեց հայագետ Գրիգոր Սարգսյանը։ Սկզբնապես նա անհրաժեշտ համարեց «ազգիս գիտնոց» ծանոթացնել իր նախընտրած սկզբունքներին, իբրև նմուշ հրապարակելով Փարպեցու պատմության Յառաջաբանը[9]։ Նրա ծանուցմամբ «մօտալուտ հրատարակութիւնս ամենուն կատարելութիւնները (խոսքը բանասերների ճշգրտումներին է վերաբերում) պիտի ամփոփէ իր մէջ, ջանալով միշտ, կարելի եղածին չափ՝ ձեռագրաց հեղինակութիւնը վեր պահել, յարգելով միանգամայն՝ ուր հարկը կը պահանջէ, քաջաբիր բանասիրաց սրամիտ տեսութիւնները»[10]։ Դատելով Յառաջաբանի բնագրից, գիտնականը իսկապես ծանր ու մանրախույզ աշխատանք է կատարել։ 1933 թ. լույս տեսավ Փարպեցու Պատմության (ու Թղթի) նրա կազմած բնագիրը, սակայն առանց տարընթերցումների ու ծանոթագրությունների, քանի որ «ի մեծագիր անդ տպագրին, ընդ հուպ՝ յընթացս տարւոյս երևելւոյ, կարգեսցուք մանր զամենայն ի վայելս բանասիրաց և յարաճուն փառս Հայրենեաց»[11]։ Ցավոք, սպասելի այդ հրատարակության որևէ օրինակ մեզ ծանոթ չէ։

Այս է, համառոտակի, Փարպեցու Պատմության ձեռագրերի ու հրատարակությունների վիճակն առ այսօր[12]։ Դժվար է պատկերացնել՝ V դարի երկը մինչև 1672 թ. ձեռագրին հասնելը քանի տասնյակ ընդօրինակություններ է ունեցել և ինչպիսի այլափոխություններով, աղավաղումներով ու «խմբագրում-սրբագրություններով» հասել մեզ։ Ընդօրինակությունների միջոցին առաջացած ակամա վրիպումներն իսկ բավական էին, որպեսզի այսօրվա բանասիրությունը նախնական բնագիրը վերականգնելու մտահոգությունն ունենար։ Մինչդեռ նույնիսկ էջակորուստներ կան։ Այսօր, երբ հիմնականում հավաքված և գերակշիռ մասով նկարագրված են մեր գրչագիր մատյանները, Փարպեցու Պատմության XVII դարից հին և ամբողջական ձեռագիր հայտնաբերելու հույս գրեթե չկա։ Ուստի մնում է մեկ ելք. ձեռագրական հավաքածոներում երևան բերել Պատմությունից քաղված հատվածներ (ցանկալի է՝ XVII դարին նախորդող շրջանից), պրպտել երբեմնի ամբողջական ձեռագրերից պոկված-պահպանված հատակտորներ (պահպանակ կամ պատառիկ) և, դրանք միմյանց ու առկա ձեռագրերին համեմատելով, բանասիրական քննության զուգորդմամբ քննել-վերականգնել բնագրի աղավաղված տեղիները։ Փորձը ցույց է տալիս, որ այս ուղղությամբ թափված ջանքերը ապարդյուն չեն մնա։ Հայագետ Նորայր եպս. Պողարյանը «Երուսաղեմի ս. Հակոբյանց վանքի մատենադարանի 1419 թվականին ընդօրինակված № 1 հսկայակերտ Ճառ-

---

[8] Ն. Բյուզանդացի, Քննութիւն Մալխասեան հրատարակութեանց Ագաթանգեղոսի և Ղազարայ Փարպեցւոյ, «Յուշարձան», 1911, էջ 173։

[9] Գրիգոր Սարգսյան, Փարպեցւոյն Յառաջաբանը յղկուած, «Բազմավէպ», 1932, էջ 444—459։

[10] Գ. Սարգսյան, նշվ. աշխ., էջ 444։

[11] Ղազարայ Փարպեցւոյ Պատմութիւն Հայոց..., Վենետիկ 1939, էջ Բ։

[12] 1907 թվականի «Ղուկասյան մատենաշարով» եղած հրատարակությանը չանդրադարձանք, որովհետև այն վերատպությունն է 1904-ի՝ առանց ներածական մասի ու տարընթերցվածքների։

բնարի» երկրորդ հատորում (էջ 720բ—728բ) հանդիպեց Փարպեցու Պատմության մի ծավալուն հատվածի, որը «գրի առնված է Փարպեցիի ծանոթ առաջին ձեռագրեն երկու և կես դար առաջ»[13]։ Հատվածի և 1904 թ. հրատարակության համապատասխան մասի (էջ 12—28) համադրությունը արդարև նշանակալի նյութ է բերում Պատմության բնագրագիտական ուսումնասիրությանը, թեև նրանում «ճառընտիրներու գրիչներուն հատուկ ազատության համաձայն կատարված են նաև զեղչումներ նշանակալի քանակությամբ»[14]։ Մեր Մատենադարանի «Ցուցակ ձեռագրացով» հայտնի դարձավ, որ այդ հավաքածոյի № 4803 գրչագրում հատված կա «ի Պատմութենէն Հայոց Ղազարու Փարպեցւոյ»[15], գրըված XVII դարում։ Այս ուշագրավ տեղեկանքը առիթ դարձավ, որպեսզի մենք զբաղվենք այդ ձեռագրի և մասնավորապես Փարպեցու Պատմությունից քաղված հատվածի ուսումնասիրությամբ։ Պարզվեց, որ ձեռագրում եղածը (էջ 78ա—85ա) համապատասխանում է հիշյալ 1904 թ. տպագրության $18_{21}$—$38_{26}$ էջերին, որ մասամբ ընդգրկված է և Ն. Պողարյանի հրապարակած քաղվածում (էջ 18—28)։ Պակաս կարևոր չէ դիտել, որ № 4803 ճառընտիրը ընդօրինակված է մատենագրության մեջ քաջ հայտնի Գրիգոր Ծերենց Խլաթեցու ձեռքով (ապրել է 1349—1425 թվականներին)[16], ուստի այն կատարելապես ժամանակակից է Երուսաղեմի վկայակոչված ճառընտրին, թերևս մեկ-երկու տասնամյակով էլ հին։

Այսպիսով, Փարպեցու Պատմության հատվածներ կան XIV—XV դարերի ձեռագրերում, որոնք երկու-երեք դարով կանխում են մեզ հայտնի ամբողջական գրչագրի ժամանակը (1672 թ.)։ Պակաս արդյունավոր չէ նաև այս երկի հնագույն երկաթագիր պատառիկներ պրպտելը։ Բ. Սարգսյանը դեռ 1905 թ., հիշված գրախոսության առիթով, արձանագրել էր. «...Մեր ձեռագրատան մէջ կը գտնուին Ղազարայ Պատմութեան մագաղաթեայ երկաթագիր օրինակի մը պատառիկներ»[17], որոնք, բանասերի կարծիքով, «մեծադիր, երկսյուն և պատկառելի ձեռագրի մը» մեկ թերթն են կազմում, որ հետագայում կտրատել և «14 փոքրիկ էջերու» են վերածել՝ «Շնորհալւոյ (Յիսուս Որդի) փոքրադիր օրինակի (ԺԲ) պահարաններ (=պահպանակներ) ձեւացնելու համար»։ Բ. Սարգըսյանը պատառիկի ընթեռնելի տողերը համեմատել է 1904 թ. հրատարակության «48—54 երեսներու ինչ-ինչ հատուածոց հետ», հանդիպել նախընտրելի տարբերությունների և եզրակացրել, թե «այս ձեռագրոս ծանօթ եղածներէն շատ տարբեր և ինքնուրոյն խումբ մը կը կազմէր»[18]։ Այդ խմբի բնույթն ու կշիռը պարզելու համար անհրաժեշտ է երևան բերել «երկաթագրիս գիր ու ցան

---

13 Նորայր եպս. Պողարյան, Նորագյուտ հատված Ղազար Փարպեցու «Հայոց պատմութեան», «Բանբեր Մատենադարանի», № 8 (1967), էջ 263—274։

14 Անդ։

15 Ցուցակ ձեռագրաց, Ա, էջ 1290։

16 Ծերենցի ծաղկագիր լինելու պարագան մեզ հավաստեց հայագետ Ա. Մաթևոսյանը, մատնացույց անելով գրչի հետևյալ հիշատակարանը. «Սուրբ երրորդութիւն, անմահ աղաւթիւք սրբոց քոց քահանայից ողորմեա՛ ստացողի գրոցս պարոն Հնդուին և իւր ծնողացն՝ Յովանիսին և Աղութին և ամենայն արեան մերձաւորաց իւրեանց, եւ առաւել՝ ամենամեղ գծագրողի Գրիգորի և ծնողաց իւրոց Ծերին և Խոյանդին և ամենայն ազգականաց և ընթերցողացս և լսողացս, ամէն» (Ձեռ. № 4803, էջ 192 Vբ)։

17 Բ. Սարգսյան, նշվ. աշխ., էջ 61։

18 Նույն տեղում, էջ 62։ Ափսոսանքով պիտի նշել, որ երախտավոր հայագետը հրապարակել է միայն ընթեռնելի տողերի տարընթերցումները (էջ 61—62), մինչդեռ պատառիկի, ժա-

եղած միւս մասերն ևս»: Այժմ պարզվում է, որ Փարպեցու Պատմության ցիրուցան եղած այլ պատառիկներ էլ կան, որոնց ուսումնասիրությունը մեզ հուշում է պատմական այդ արժեքավոր երկի շատ ավելի հին, շատ ավելի նախնական ու անաղարտ բնագիր: Կրկնում ենք, միայն այս ճանապարհով կարող ենք սկզբունքներ, ելակետեր ու կռվաններ մշակել սպասելիք քննական հրատարակության համար, եթե չենք ուզում սրբագործել միջնադարյան գրիչ-խմբագիրների կամա-ակամա միջամտությունները, դարերով կուտակված սխալանք-վրիպակները. «Հին բնագրաց քննական հրատարակութիւնք կը պահանջուին»,—գրել է Ն. Բյուզանդացին[19]:

ՍՍՀՄ Արևելագիտության ինստիտուտի Լենինգրադյան բաժանմունքի հայկական հավաքածոյի A—82 ձեռագիրը մուտք է գործել 1916 թվականին՝ Վանի հավաքածոյի կազմում[20]: Սկզբնապես քարտագրվել է իբրև Շարակնոց, մինչդեռ իրականում Մանրուսմունք է: Սկսվում է՝ Երգ տեառն Ներսիսի ասացեալ՝ գիշերային պաշտամանց. Յիշեսցուք ի գիշերի զանուն քո, տէ՛ր... (թ. 1ա)[21]: Ձեռագիրն այժմ ունի 139 թերթ. բաղկացած է 12 պրակից, յուրաքանչյուրը 12 թերթ (7-րդ պրակն ունի 8 թերթ): Ձեռագրի առաջին թերթը կտրված է: Մեծությունը՝ 12,5×10 սմ, գրությունը՝ միասյուն, տողեր՝ 18—20, տողերը, ինչպես և աջ ու ձախ լուսանցները նշված են բարակ գծերով, նյութը՝ լավ որակի բարակ մագաղաթ, հազվադեպ նորոգումները՝ թղթով, գրչությունը՝ բոլորգիր խազերով: Ունի ճոխ կիսախորաններ, լուսանցազարդեր, զարդագրեր և գլխատառեր: Ծաղկողը հաճախ է օգտվում ոսկուց: Կազմը՝ խնամքով պատրաստված, դրոշմազարդ, կաշեպատ տախտակ: Պահպանվել է գրչի երկու հիշատակարան.

ա. Զստացաւղ տեառն եղանակացս սուրբ րաբունապետն Եսայի և բդգրիչս՝ զՊաւղոս աղաչեմ յիշել ի տէր (էջ 16ա).

բ. Զստացաւղ եղանակիս զսուրբ և զերանաշնորհ րաբունապետն Եսայի յիշեսջիք ի տէր (էջ 89ա)[22]:

Գրչության ժամանակ կարելի է համարել XIV դարը, ելակետ ունենալով մագաղաթի պատրաստման որակը, բոլորգրի ինքնատիպությունները, մանավանդ զարդագրերն ու լուսանցազարդերը: Այդ է հուշում և ձեռագրի ուղղա-

---

մանակի, գրչության, վիճակի և այլնի հետ կապված հարցերը մնում են անհայտ՝ գեթ նմանահանությունը հրապարակած չլինելու պատճառով:

19 Ն. Բյուզանդացի, Քննութիւն Մալխասեանց հրատարակութեանց..., էջ 161:

20 Ձեռագրում կա ներդիր այսպիսի մի հասցե. „От Кавказского отдела Имп. Моск Арх. Общества". Ինչպես երևում է, որոշ ժամանակ այդ ընկերության սեփականությունն է եղել:

21 Նույն խմբագրության Մանրուսմունքի նկարագրությունը տե՛ս Հ. Տաշեան, Ցուցակ հայերէն ձեռագրաց Մատենադարանին Մխիթարեանց ի Վիեննա, Վիեննա, 1895, էջ 499—500 (ձեռ. № 183):

22 Կան նաև ուշ շրջանի հիշատակագրություններ.

ա. «Զմեղուցեալ ստացող սուրբ գրոցս զՍտեփանոս Ազուլեց և զծնաւղսն իմ զԿարապետ և զԹուխութանկ և զեղբայրքն իմ և զամենայն արեան մերձաւորքն իմ յիշեցէք ի Քրիստոս, և աստուած զձեզ յիշէ, ամէն» (էջ 139ր):

բ. «Ով ///եղբայր սիրուն,
Տերակս ի ձեռս հասատուն.
Դու զաւրանաս ի սուրբ հոգւոյն
Եւ հասանես յաւարտ բարոյն» (էջ 139 ր):

գ. «Յիշեցէք ի տէր զՄկրտիչն Թուրաւաղէն և աստուած ողորմի ասացէք, աստուած ձեզ ողորմեսցէ, ամէն» (էջ 139վ):

գրությունը։ Ամենայն հավանականությամբ հիշատակարանի «սուրբ և երանաշնորհ րաբունապետ Եսային» նշանավոր Եսայի Նչեցին է, քանի որ այդ շրջանում նման մեծարանքի արժանի մեկ ուրիշ Եսայի չգիտենք։ Եթե այդ ճիշտ է, ապա ձեռագիրը գրված պետք է լինի մինչև 1338 թվականը (մինչև Նչեցու մահը), Գլաձորում, նրա րաբունապետության օրոք (1284—1338 թթ.)։ Ձեռագրի խնամքով ու զարդարուն լինելը միանգամայն վայել է ստացողի անվանն ու գրչության դպրոցի հեղինակությանը։ Եվ իրոք, Գլաձորից հայտնի նշանավոր գրիչներից մեկը եղել է Պողոս Կիլիկեցի կամ Ակներցի վարդապետը, Գ. Հովսեփյանի որակմամբ՝ «Շնորհալի գրիչ և մանրանկարիչ»[23], որը «յաղագս փափագման իմաստասիրական արհեստից տարաշխարհիկ եղեալ ի կայս և ի կոյս արևու»[24], բնակություն է հաստատում Գլաձորում։ Հիշյալ փաստը որոշակի հետաքրքրություն է ներկայացնում և լրացուցիչ ուսումնասիրություն պահանջում ինչպես գրչագրի բովանդակության, նրա կիրառության, այնպես էլ մանրանկարչության ու գրչության արվեստի առումով[25]։ Այս ձեռագրում իբրև պահպանակ է գործածված Ղազար Փարպեցու Պատմությունից պոկված կամ պահպանված մեկ թերթ, որը միջին մասից կիսված է և երկու պահպանակ-պատառիկի վերածված, որոնցից յուրաքանչյուրը երկծալ կարված է ձեռագրին՝ կազմելու ժամանակ։ Սկզբի պահպանակի չափերն են 19,3×12,1 սմ, վերևի աջ անկյունը երեք տողի սահմանում պոկված է, վերջինը՝ 15,8×12,1 սմ։ Ուրեմն, թերթի սկզբնական չափը եղել է ավելի քան 24,2×19,3 սմ։ Գրությունը երկսյուն է, մագաղաթը՝ հաստ ու լավորակ, ժամանակի ընթացքում դեղնած։ Տողերը նշված են ճնշումով, էջում՝ 21 տող։ Գրված է սև թանաքով, տեղ-տեղ այժմ ներկաթափ է ու խունացած։ Որոշ տառանիշեր ու բառեր ուշ շրջանում այլ թանաքով թարմացված են, որը սակայն չի խանգարում հնի տարորոշմանը։ Գրչությունը ուղղագիծ երկաթագիր է, միայն որոշ տառաձևեր մասամբ բոլորգծային են։ Ժամանակ՝ X—XI դար։

Ստորև տալիս ենք պատառիկի վերծանությունը, թերթերի հաջորդականությունը նշելով հռոմեական թվանշանով, միաժամանակ այն համեմատության մեջ դնելով Փարպեցու Պատմության գիտական հրատարակության հետ (վերջինս իբրև ընդատողյա տարընթերցում)[26]։

---

23 Գարեգին կաթողիկոս Հովսեփյան, Խաղբակեանք կամ Պռոշեանք Հայոց պատմութեան մէջ, Անթիլիաս, 1969, էջ 177։

24 Լ. Խաչիկյան, ԺԴ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ, Երևան, 1950, էջ 99—100, հմմ. Լ. Խաչերյան, Մատենագրական տեղեկությունները Գլաձորի համալսարանի մասին, ՊԲՀ, 1965, № 4, էջ 200։

25 Անհրաժեշտ է համադրել Պողոսի ընդօրինակությամբ հասած մյուս ձեռագրերի, ինչպես և նրանցում եղած մանրանկարների հետ։

26 Տողատակի սովորական փակագծում, գիտական բնագրի համեմատվող ձեռագրերի ցուցանիշների պահպանումով, անհրաժեշտ ենք համարել վկայակոչել այն ընթերցումները, որոնք մերձ են մեր պատառիկին, բայց հրատարակիչների կողմից նախընտրված չեն։



80 27–32

II 1p / / / / [1]ՉՆՈՅՆ ՈՒ–[1]
ՏԵԼ ՅԱՆԽՆԱՅ[2] ԵՒ ԱՊԱԿԱ-
ՆԵԼ ՈՉ ՊԱՏԿԱՌԷ[3]: ԱՐԴ[4], ՅԱ-
ՄԵՆԱՅՆ ՆԻՒԹՍ ՀՈՒՐ, Ա-
ՊԱ ՈՒՐԵՄՆ՝ ԱՄԵՆԱՅՆ ՆԻՒ-
ԹՔ ՅԵՐԿՐԻ[5] ԱՍՏՈՒԱԾՔ: Ա-
ՊԱ ԹԵ[6] ԱՅԴՊԷՍ ԳԻՏԷՔ, ՈՐ-
ՊԷՍ ԵՒ ԷԴ ԻՍԿ ԵՒ ՏԵՍԱՆԷՔ[7],
ԸՆԴԷ՞Ր ԿՈՒՐԱՑԵԱԼ ՄՏԱՒՔ
[ՉԻԿԷՍ ՄԱՍՆ ՅԱՍՏՈՒԱԾՈ-
ՅՆ ՊԱՏՈՒԵԱԼ Ի ՇՔԵՂՈՒ-
[Թ]ԵԱՆ ԳՈՐԾ ՄԱՍՏՈՒՑԱՆԷՔ[8],

1 ուտն 2 և անխնայ 3 եւ ապականել ոչ պատկառէ ] (2 ոչ պատկառէ) 4 արդ ] ոչ պակասէ 5 երկրի (2 յերկրի) 6 թէ 7 որպէս եւ էր իսկ եւ տեսանէք ] 8 յաստուծոյն պատուեալ ի շքեղու-



1 2r [ԶԿԷՍՆ՝] ԾԱԽԵԱԼ ԹՇՆԱՄԱ-
[ՆԷՔ]։ ՈՐՊԷ՞Ս ՅԱՂԻՍՈՅ
[ԵՒ Ի] ՔԱՐԱՆՑ Ի ԿԻՍԻՈՑՆ[9] Ա-
ՊԱՐԱՆՍ ԵՒ ՍԵՆԵԱԿՍ ԹԱ-
ԳԱՒՈՐԱՑ ԵՒ ԻՇԽԱՆԱՑ ՇԻ-
ՆԷՔ[10], ԵՒ Ի ԿԻՍՈՑՆ[11] ՈՐՄ Ս-
ՆԱՏԱՆՑ ԵՒ ԴԱՇՏԱՆԱՏԱ-
[Ն]Ց ԿԱՐԳԵԱԼՔ ՅԱՒՐԻՆԻՆ[12]
[ / / / / / / / / / ]

---

*թեան գործ մոռացանէք] անուանէք աստուածս 9 ի կիսոցն] զկէսս 10 ապարանս եւ սենեակս թագաւորաց եւ իշխանաց շինէք] ապարանս շինէք 11 ի կիսոցն] զկէսս 12 որմ սնատանց եւ դաշտանատանց կարգեալք յաւրինին] տունս դաշտանաց և ապահովութեան շինէք։*



ԾՍ$_{33-37}$

2ա ⌈ՀԱՆԴԵՐՁՍ ՄԵԾԱՊ⌉ [ԱՅ-]
ԾԱՌՍ ՅԱՒՐԻՆԷՔ, [ԸՆԴ Ն-]
ՄԻՆ՝ ԽԱՒՂԱՄԱՆՍ [ԵՒ]
ԽԸԼՆԱՆՈՑՍ ԱՐԱՐԵ[ԱԼ ԿԱԶ-]
ՄԷՔ[1]։ ՀՐՈՎ՝ ԱՍՏՈ[ՒԱԾՈՑՆ]
ԶՈՉԽԱՐՍ ԵՒ ԶԱՐՉԱ[ՌՍ Ա-]
ՆՈՒԱՆԵԱԼՍ, Ի ՁԵՌՍ [ՊԱ-]
ՏՈՒԱԾՍ[2], ԽՈՐՈՎԷ[Ք ԵՒ Ե-]
ՓԷՔ. Ի ՋՐՈՑ[3] ԿԻՍ[ՈՑՆ][4]
ԶԴԱՇՏԱՆՍ ԵՒ ԶԹԱ[ՐԱԽՍ]
ՎԻՐԱՒՈՐԱՑ ԵՒ Զ[ԱՂՐՍ, Զ-]
ԱՐԻՒՆ ՈՉԽԱՐԱՑ Ա[ՌԱՆ-][5]

1 Հանդերձ մեծապայծառ յարինէք, ընդ նմին՝ խաւղամանս եւ խըլնանոցս արարեալ կազմէք] 2 զոչխարս եւ զարչառս անուանեալս, ի ձեռս պատուածս] զարչառս և զոչխարս 3 ի ջրոց] և ջրով 4 կիսով 5 վիրաւորաց եւ զագրս, զարին ոչխարաց առան-] և զագրս լուանալք, և



1 1ա [ / / / / ] ⸢ԸՆԴ ԳԻ–⸣
ՆԻ ԸՄՊԷՔ ՅՈՏՍ [ՄԱՐԴԿ?–]
ԱՆ ԵՒ ՈՉ ՍՈՍԿԱ⸢ՅՔ ԵՒ⸣
⸢ԶԱՐՀՈՒՐԻՔ⸣[6]։
ԵՒ ԶԻ ՄԻ[7] ԵՒՍ ՄԻ ԸՍՏ ՄԻՈՁ[Է]
ՀԱՐԿԱՒՈՐՒՅԻՄՔ ԱՍԵԼ ⸢ԵՒ⸣
⸢Կ⸣ԱՄ ԹՈՒԵԼ ԶԱՆԶԳԱՅ
ԱՊՇՈՒԹԻ⸢ՒՆ ՅԻՄԱՐՍ[8]⸣
/ / / / / / / /

---

զկէան տառանձինն 6 յոտս մարդկան եւ ոչ սոսկայք եւ զարհուրիք] և ոչ զարհուրիք և սոսկայք 7 մի] (Զ և տող+մի) 8 զանզգաւ ապշութիւն յիմարս] զանզգայութիւնդ ձեր։



80₃₈—81₅

II 2բ [ՎԱՐԴ]ԱՆ ԵՒ ՆՈՐԻ⌈Ն[1] ՆՄԱ-⌉
[ՆԻՔՆ], ՈՐՔ, ՈՉ ԿԱՐԱՑ⌈ԵՆ⌉-
[ԱԼՔ Ա]ՅՍՊԻՍԻ ԽԱԲԷՈՒԹ[Ե]-
[ԱՆ] ⌈Ծ⌉ԱՌԱՅԵԼ, ԲՈՂՈ-
[ՔԵԻՆ] ՁԵԶ ՀԱՆԱՊԱԶ[2], Թ⌈Ե⌉[3]
[ՄՈՒՏ] ԵՆ ՊԱՇՏԱՄՈՒՆՔ⌈Դ⌉
[ՁԵՐ] ԵՒ ՄԱՐԴՈՅ[4] ԱՆՄՏ-
[ԱՅ Վ]⌈Ա⌉ՐԴԱՊԵՏՈՒԹԻՒՆՔ:
[ԵՒ ՉԼ]ՍԵԻՔ[5], ՎԱՍՆ[6] ՁԻ ԲՌ-
[ՆՈՒԹ]ԻՒՆ[7] ՁԻՐԱԻՈՒՆՍ ՈՉ
[ՏԱ][8] ՃԱՆԱՉԵԼ, ՈՐՊԷՍ
[ԵՒ ԱՅ]ԺՄԴ ԻՍԿ ՉՃԱՆԱՉ⌈Է⌉Ք[9]

---

*1 Նոցունց 2 Համապաղօր 3 թէ 4 մարդոյ] 5 չլսէիք 6 վասն] 7 բռնութիւնք 8 տան 9 այժմ*





I 1p / / / / / / [ԽՈՍՏԱ-]
ՑԵԱԼՔ[10] ՀԱՆՏՈՒԺԵԼ[11] [ԵՏՈ-]
ԻՆ ԶԱՆՁԻՆՍ[12] Ի ՄԱՀ ԵՒ ՊԸ-
ՍԱԿԵՑԱՆ, ՈՐՈՑ ԳՈՐ-
ԾՈՑ[13] ԵՒ ՄԵՔ ՔԱՋԱԼԵՐԻՉՔ
ԵԱՔ[14] ԵՒ ԶԱՒՐԱՑՈՒՑԻՉՔ՝
ՈՐՊԷՍ ԶԱՐԴԱՐ ՈՒՍՈՒՑԻ-
ՉՍ ԵՒ ԶՃՇՄԱՐԻՏ ՎԱՐԴԱ-
ՊԵՏՍ[15]:

---

*իսկ չմանալէք] այժմ 10 / / / / ցեալք] 11 հանդուրժեալք 12+ իւրեանց 13 գործոց] 14 էաք 15 եւ զաւրացուցիչք՝ որպէս զարդար ուսուցիչս եւ զճշմարիտ վարդապետս] և արդարև ճշմարիտ վարդապետք նոցա:*





Ց1$_{7-13}$

II 1ա / / / / / / / /
ԲԵՐԱՆ ԳՈՎԵՑԻՆ ԱՄԵ-
ՆԱՅՆ[1] ՍՈՒՐԲ ՔԱՀԱՆԱՅՔՆ
ՄԵԾԱՁԱՅՆ ԲԱՐԲԱՌՈՎ
ԵՒ ՈՒՐԱԽ ԵՂԵՆ[2]:
ԵՒ ԼՈՒԵԱԼ ԶՄԵԾԱԲԱՐԲԱ⌜Ռ⌝
ԳՈՎՈՒԹԻՒՆ ՍՐԲՈՑՆ ԵՒ
ԶԲԵՐԿՐՈՒՄՆ ԵՐԵՍԱՑ Ն⌜Ո-⌝
ՅԱ ՏԵՍԵԱԼ ԱՆԱՒՐԷՆ
ԻՇԽԱՆԻՆ[3] ՄԻՐՀՆԵՐՍԵՀ[4]
ԵՒ ԱՅԳ[5] ԱՒԱԳԱՆԻՈՅՆ[6], ՈՐ ՆԻՍ-⌝
ՏԷԻՆ[7] ԱՌԱՋԻ ՆՈՐԱ, Ի ՅԱ-

---

*1 ամենայն] 2+յոյժ 3 իշխանին] 4 Միհրներսեհի 5 այլ 6+Արեաց 7 նստէին*



I 2ա [ՍՈՒՄՆ ԲԱՐԿՈՒԹԵԱՆ ԳՐ-]
ԳԸՌԵԱԼ[8] ԱՍԷ ՅՆՈ[ՍԱ. ՈՉ]
ՀՐԱՄԱՅԵՆ ՄԵԶ ԱՒՐ[ԷՆՔՆ]
ՄԵՐ ՑԱՍՆՈՒԼ ՈՒՄԵՔ [ՄԻ-]
ՆՉ ՉԵՒ ԻՆՉ ԼՈՒԵԱԼ ԻՑԷ[9] Ի
ԲԵՐԱՆՈՅ ՆՈՐԱ: ԱՐԴ, ՈՐ-
ՊԷՍ[10] ՉՈՒԱՐԹԱՑԵԱԼՍ ԻՄ[11]
ՏԵՍԱՔ ՉՉԵՉ ԸՆԴ ԽԱ-
ԻՍՍ ԱՇԽԱՀԱԿՈՐՈՅՍ[12] ԿՈ[Ր]Ի[-][13]

8 գրգռեալ] եղեալ 9 իցէ] 10 որպէս] 11 իմ] իմն 12 աշխարհակորուսիդ 13 կոր[ուսիդ]

Բնականաբար, առաջին հերթին մեզ զբաղեցնում է այն հարցը, թե առաջարկվող պատառիկը ի՞նչ էական ճշգրտում է կատարում, բնագրական ի՞նչ առավելություններ է բացահայտում: Փորձենք այդպիսիք վկայակոչել մեկ առ մեկ.

1. «Որ զիւր զեղբայր և զծնօղ որպէս թշնամիս ծախէ, զի՞արդ նա զթշնամանիչս իւր և կամ զերկրպագուսն գիտէ պատուել և կամ թշնամանել. և դարձեալ յորմէ ծնանին՝ զնոյն ունեն և անխնայ: Ոչ պակասէ յամենայն նիւթս հուր...» ($80_{25-28}$):

Այստեղ բնագրի ակներև խաթարում կա. Փարպեցու մոտ խոսվում է կրակի մասին, թվարկելով ու բացահայտելով նրա առաջացման ու «կորնչման» պարագաները, ուստի «ծնանին» և «ունեն» հոգնակիությունը միանգամայն ավելորդ է, սխալ, մանավանդ որ՝ այդ նույն նախադասության մեջ կա «նա» ենթական (հուրը): Մեկ նախադասության սահմաններում, երբ խոսքը հրի հետ կապված գործողությունների մասին է, անպատեհ չէր բայական դիմավոր և անդեմ ձևերի զուգահեռ գործածություն (պատուել և կամ թշնամանել... զնոյն ունեն (resp. ունէ): Ավելի բնականոն կլիներ այս դեպքում ևս ունենալ «ունել»: Ի վերջո, ամենևին անհասկանալի է «և անխնայ»-ն. նման որակումից հետո բայական շարունակություն էր անհրաժեշտ, փաստորեն արտահայտությունը մնում է կիսավարտ, թեև հրատարակիչները վերջակետ են դրել[27]: Հաջորդ նախադասության սկիզբը ևս կասկած է հարուցում. նախ՝ շարադասական առումով նախընտրելի կլիներ ունենալ ոչ թե «Ոչ պակասէ յամենայն նիւթս հուր...», այլ «Յամենայն նիւթս հուր ոչ պակասէ» կամ թեկուզ՝ «Յամենայն նիւթս ոչ պակասէ հուր», ապա՝ ընդգծված «ոչ պակասէ»-ն փաստորեն նախադասության ընդհանուր և հիմնական իմաստին որևէ բան չի ավելացնում: Գրաբարյան բնագրերի հմուտ ընթերցողը «Յամենայն նիւթս հուր» կարդալով էլ հասկանում է, որ խոսքը նյութերի՝ հուր առաջացնելու ընդունակության մասին է, հետևաբար՝ ամեն նյութի մեջ հուր լինելու: Փարպեցին նախորդ հատվածում արդեն ասում է, թե «կրակ ի բազում նիւթոց լինի»:

Մեր պատառիկը ճշգրտում է վերևում թվարկված աղավաղումներն ու կասկածելի տեղիները. այստեղ «ունեն»-ի փխ. ունենք «ունել», բացակայում է «և»-ը, որով դառնում է «ունել անխնայ», իսկ «ոչ պակասէ»-ի փխ. «ոչ պատկառէ», որ նախադասության շարունակությունն է և ոչ հաջորդի սկիզբը: Քանի որ «պատկառէ» եզակի է, ուրեմն եզակի է դառնում նաև «ծնանին» (ծնանի): Պարզվում է, որ «ունեն և անխնայ»-ի «և»-ը ոչ թե ավելորդ է, այլ «և ապականել»-ի տեղահան եղած մնացուկը: Ինչ վերաբերում է «ոչ պակասէ»-ին, ապա խաթարված կոնտեքստում «ոչ պատկառէ»-ն գրչական հիմքի վրա գիտակցվել է իբրև «ոչ պակասէ»: Այսպիսով, Փարպեցու բնագրում մեկ նախադասություն կազմող հատվածում առկա է մի քանի աղավաղում՝ մեկը մյուսին հենված: Պատառիկը ճշգրտում է այդ ամենը: Այսուհետև պետք է կարդալ. «...և դարձեալ, յորմէ ծնանի՝ զնոյն ունել յանխնայ և ապականել ոչ պատկառէ: Արդ, յամենայն նիւթս հուր...»:

27 Տողատակին գրելով «Թերևս ուղղելի զնոյն ունէ նա անխնայ»:

2. «...ապա ուրեմն ամենայն նիւթք երկրի աստուածք. ապա թէ այդպէս գիտէք, ընդէ՞ր կուրացեալ մտօք զկէս մասն անուանէք աստուածք, և զկէսն յաղտեղի գործ ծախեալ թշնամանէք...» ($80_{28-31}$)։

Ի տարբերություն նախորդ հատվածի, այստեղ քերականական, ոճական կամ այլ խաթարում գրեթե չի նկատվում, ուստի առանց հին և հավաստի աղբյուր ունենալու կարելի չէ միջամտել։ Միակ ակներև սրբագրելիքը «երկրի»-ն է։ Խոսքը ոչ թե երկրի նյութերի, այլ՝ երկրում եղած նյութերի (առարկաների) մասին է, ուստի պետք է լիներ «յերկրի», ինչպես որ կա գիտական հրատարակության հիմք ձեռագրում, բայց հրատարակիչները չգիտես ինչու նախընտրելի չեն համարել։ Նորահայտ պատառիկը ևս հավաստում է տողատակ իջեցված «յերկրի» ձևի նախնականությունը։ Շարունակության մեջ հակառակը թույլ է տալիս եզրակացության այնպիսի ուղղագծություն, որ դժվար չէր լինի միտումնավորությամբ բացատրել. եթե բոլոր նյութերի (առարկաների, իրերի) մեջ հուր կա, ապա դրանք բոլորը աստվածներ են, իսկ եթե այդպես է՝ ինչո՞ւ են կես մասը միայն համարում, իսկ կեսը՝ «յաղտեղի գործ ծախեալ թշնամանէք»։ Պատառիկում նման ուղղագծություն չկա, և հակառակությունն ավելի պատճառաբանված է. «զկէս մասն յաստուծոյ պատուեալ՝ ի շքեղութեան գործ մատուցանէք, զկէսն՝ ծախեալ թշնամանէք»։ Սակայն պատառիկի տարբերությունը միայն վկայակոչվածով չի ավարտվում։ Հարցումով ժխտման անցնելուց առաջ (ընդէ՞ր) այստեղ կա մի ուշագրավ տող՝ «որպէս եւ էգ իսկ եւ տեսանէք», որով ակնարկվում է, թե ոչ միայն դուք այդպես եք ճանաչում («այդպէս գիտէք»), այլ, ըստ ձեր պնդման, իրականում այդպես էլ կա ու տեսնում եք։ Ճարտասանական արվեստի մասնագետները հավանաբար այստեղ նախընտրելի եղանակ կտեսնեն։

Ի վերջո, մեկ դիտողություն ևս. գիտական բնագրի հրատարակիչները վկայակոչված հատվածի երկրորդ «աստուածք» բառը համարել են կասկածելի ուղղագրական ձև ունեցող (դրել են աստղանիշով)։ Պատառիկի ուսումնասիրությունից պարզվում է, որ սկզբնական բնագրում եղել է «յաստուածոցն» և որ նախադասության այդ մասը հետագայում խմբագրվել է։

3. «...որպէս յաղիւսոց և ի քարանց զկէսս ապարանս շինէք, և զկէսս տունս դաշտանաց և աղտեղութեան շինէք» ($80_{31-32}$)։

Նախ դիտենք, որ Փարպեցու մոտ շարունակվում է հարցում-բանավեճը, իսկ այդ նշանակում է, թե «որպէս»-ի վրա հարցական նշան պետք է դրվի։ Կարծում ենք, որ «կէս»-ի հոգնակի հայցականը (զկէսս) լրիվ չի բացահայտում հեղինակի միտքը. հարկավ ավելի ճիշտ կլիներ ասել «քարերի կեսից ապարանք եք շինում», քան «քարերի կեսը ապարանք եք շինում»։ Պատառիկում գտնում ենք նախընտրելի համարված ձևը՝ «ի կիսոցն»։ Շարունակության մեջ ևս տարբերություն կա. գիտական բնագրի «ապարանս շինէք»-ի փոխարեն պատառիկը տալիս է առավել ընդգրկուն մի արտահայտություն. «ապարանս եւ սենեակս թագաւորաց եւ իշխանաց շինէք»։ Այստեղ կարելի է վիճել, թե որն է նախնական, թեև նրանց միջև իմաստային էական տարբերություն չկա. պատառիկում մասնավորեցումն ընդգծված է։ Ներկա դեպքում էլ մենք նախընտրությունը տալիս ենք նորահայտին, որովհետև տրամաբանական է են-

թադրել, թե գիտական հրատարակության հիմք ձեռագրի ընդօրինակողը վրիպել է և բաց թողել երկսյուն ձեռագրի մեկ տող՝ ԵՒ ՄՆՆԵՃԿՍ ԹԱԳԱՒՈՐԱՑ ԵՒ ԻՇԽԱՆԱՑ։ Նախադասության շարունակության մեջ ևս նկատելի տարբերություն կա. «և զկէսս տունս դաշտանաց և աղտեղութեան չինէք»-ի փոխարեն այստեղ կարդում ենք. «Եւ ի կիսոցն՝ որմ սնատանց և դաշտանատանց կարգեալք յաւրինին»։ «Զկէսս» և «ի կիսոցն»-ի միջև եղած տարբերության մասին արդեն խոսվեց, դատելով շարունակությունը՝ կարող ենք վստահությամբ ասել, որ նախընտրելին պատառիկի ընթերցումն է։ Քանի որ խոսքը աղյուսի ու քարի մասին է, հարկավ, ճիշտ կլիներ «որմ» ընթերցումը, մանավանդ որ՝ հաջորդ բառերը տերմիններ են (սնատուն, դաշտանատուն)։ Ի վերջո, նախնական համարելու մեկ կռվան ևս կա. Փարպեցու լեզվին և ոճին խորթ է բառական կրկնությունը նախադասության մի հատվածում, իսկ գիտական բնագրում այդ անհարիրությունը կա (ապարանս չինէք... և... տուն... աղտեղութեան չինէք), մինչդեռ նոր բնագրում, առկա է կատարելապես հոմանիշ ուրիշ բառ՝ կարգել, յաւրինել (կարգեալք յաւրինին)։

4. «և յարծաթոյ զկէսս ըմպելիս կազմէք, և զկէսս անօթս աղտեղութեան կազմէք» ($80_{32-33}$)։

Ափսոսանքով պետք է նշել, որ պատառիկում մեկ տող կտրված ընկած է, ուստի դժվարանում ենք ասել, թե վկայակոչված այս նախադասության սկզբի բառերը (և յարծաթոյ զկէսս) արդյո՞ք նույնությամբ են եղել այնտեղ։ Դատելով նախորդ օրինակից, գիտական բնագրի «զկէսս»-ի փոխարեն «ի կիսոցն» պիտի ունենայինք։ Կարևոր է հետևյալ պարագան. ինչպես ասվեց, նույն նախադասության մեջ բառական կրկնությունը Փարպեցու ոճին առանձնահատուկ չէ, մինչդեռ այստեղ նորից ունենք «ըմպելիս կազմէք» և «անօթս... կազմէք»։ Պատառիկը ճշտում է ոճական այդ խաթարումը, մի դեպքում տալով «յաւրինէք», մյուսում՝ «կազմէք», որ և նախընտրելի է։ «Ըմպելիք» բառի փոխարեն (ըմպակ, բաժակ) պատառիկը տալիս է «հանդերձ մեծապայծառք», ուր «հանդերձ» նշանակում է արծաթից պատրաստված «սպասք, զարդ»[28], այն է՝ մեծապայծառ։ Նախադասության երկրորդ կեսի «անօթս աղտեղութեան» արտահայտության դիմաց պատառիկը տալիս է նրանց իրական անվանումը՝ «խաւղամանս և խըլնանոցս արարեալ կազմէք»։ Դժվար չէ կռահել, որ Փարպեցու պատմության հետագա խմբագիրները աշխատել են խուսափել նման տհաճ մանրամասնությունից. ի դեպ, չենք կարող հակառակը պնդել, որովհետև «խաւղաման» և «խըլնանոց» բառերը մեր մատենագրության մեջ սովորական և տարածուն գործածություն չունեն, հետևաբար ուշ շրջանի արտագրություն չեն կարող լինել։

Եթե առաջարկվող սրբագրություն-փոփոխությունները արտացոլենք գիտական տեքստում, ապա կունենանք. «Եւ [ի միոյն] արծաթոյ հանդերձս մեծապայծառս յաւրինէք, ընդ նմին՝ խաւղամանս և խըլնանոցս արարեալ կազմէք»։

Նկատենք, որ վերականգնման մեջ մեկ հիմնական պայմանականություն կա՝ ի միոյն։ Նախադասության երկրորդ կեսի «զկէսս»-ը պատառիկում չկա,

28 Տե՛ս ՆՀԲ, II, 41։

*ուրեմն այն չկար և սկզբում, ապա «[ընդ ն]մին»-ի գոյությունը փաստում է, որ խոսքը նույն արծաթից պատրաստելու մասին է և ոչ՝ կեսից այս, կեսից՝ այլ լինելու, թեև բուն միտքը մնում է նույնը։*

5. *«Հրով՝ աստուածոցն զարջառս և զոչխարս խորովէք և եփէք»* ($80_{33-34}$)։

*Պատառիկը այս նախադասության մեջ ավելացնում է՝ «անուանեալս, ի ձէնջ պատուածս»։ Նկատելու է, որ ավելացվողը երկաթագիր մեկ տող կարող էր կազմել, ուստի, հավանաբար, վրիպմամբ բաց է թողվել։ Նման դեպքեր շատ են հայտնի, ընդ որում տողը վերաբերում է «արջառ»-ին (զարջառ անուանեալս, ի ձէնջ պատուածս)։*

6. *«և ջրով՝ զդաշտանս և զթարախս և զաղբս լուանայք, և զկէսն առանձինն և կամ խառնեալ ընդ գինի՝ ըմպէք, և ոչ զարհուրիք և սոսկայք»* ($80_{34-36}$)։

*Սույն հատվածում ևս խաթարում կա. սկզբում խոսվում է ջրի մասին ընդհանրապես և ապա՝ կեսի, մինչդեռ համարնույթ նախորդ վկայակոչություններից գիտենք, որ Փարպեցին վիճելիքը ակներև դարձնելու համար նախընտրում է ասել՝ կեսից այս եք անում, կեսից՝ այն։ Այստեղ ևս նման հարցադրում էր սպասվում։ Նորահայտ պատառիկը լիովին հաստատում է սրբագրելիքը՝ «ի ջրոց կիսոցն»։ Սակայն շարունակության մեջ ինքը պատառիկն է խաթարված, ավելի ճիշտ՝ ընդօրինակելիս բաց է թողած մեկ տող, ուր պարտադիր պետք է լիներ «լուանայք» ստորոգյալը և «ի կիսոցն» հարաբերողը։ Առայժմ անբացատրելի է մնում «արիւն ուլխարաց ա[...]» տողը. եթե ենթադրենք, որ նախորդ տողի վերջում «զ» նախդիր է եղել, ապա պարզապես շարունակվում է թվարկումը (զդաշտան..., զարիւն ուլխարաց), իսկ եթե ոչ՝ ապա այդ տողը կապվելու է «խառնեալ ընդ գինի ըմպէք» արտահայտությանը։ Մենք հակված ենք դեպի առաջին ենթադրությունը և տողիմաստի վերականգնումը համարում ենք քննելի։ Պատառիկի ընձեռած մյուս տարընթերցումները սկզբունքային չեն, իսկ ետևառաջությունների առկայությունը իմաստային փոփոխություն չի բերում։ Թեական ենք համարում և «յոտս [մարդկ]ան» վերականգնումը (մարդկանց ոտա՞չ, ներկայությա՞մբ), ուստի վաղաժամ է այն գիտական տեքստ մտցնել։ Ակներև է, սակայն, որ նախադասության այդ մասում էլ որոշակի տարընթերցումներ են եղել։*

*Այսպիսով, վկայակոչված հատվածում ընդամենը մեկ-երկու սրբագրում-լրացում է կատարվում։*

7. «Եւ զի՞ ևս մի ըստ միոջէ *հարկաւորիցիմք ասել և կամ թուել* զանզգայութիւն ձեր» ($80_{36-37}$)։

*Գիտական բնագրի հրատարակիչները, ընդունելով Ն. Բյուզանդացու առաջարկած ոճական սրբագրությունը՝* «Եւ զի՞ *ևս մի ըստ միոջէ»*[29], *ձեռագրերի «եւ զի մի ևս մի ըստ միոջէ» ընթերցումը տողատակ են իջեցրել։ Պատառիկը*

29 Ն. Բյուզանդացի, *Հայկական բառաքննություն, Կ. Պոլիս, 1880, էջ 82։*

լիապես նույնական է ձեռագրերի հետ: Հավաստիանալու համար, թե տարբերակներից որն է ճիշտ, պետք է պարզել նախադասության բնույթը. եթե այն հարցական է, ապա ճիշտը Բյուզանդացու առաջարկած ուղղումն է «եւ զի՞ ևս...», բայց նույնքան և ավելի տեղին է հրամայական-արգելական ոճի կիրառումն այստեղ՝ «եւ զի մի՛ ևս մի բառ միոջէ» (իմա՝ և որպեսզի մեկ առ մեկ հարկադրված չլինենք պատմել): Եվ իրոք, Փարպեցին կտրուկ եղանակով վկայակոչում է Վարդանին ու Վարդանանց, որոնք հրաժարվել են այդ խաբեության ծառայելուց: Նման ընկալման դեպքում բնագիրը սրբագրելու անհրաժեշտությունը վերանում է, մանավանդ որ պատառիկը ևս հաստատում է այդ: Ի դեպ, հրատարակիչները ուշադրություն չեն դարձրել, որ Բյուզանդացին օգտվել է այն ձեռագրից, ուր «զի» չի եղել, ուստի նրա գոյությունը ենթադրող գիտնականը անհրաժեշտ է համարել «զի» սրբագրել այնտեղ առկա «մի»-ն: Երբ ձեռագրում «զի» կար, սրբագրելիք այլևս ոչինչ չէր մնում, մանավանդ որ Ն. Բյուզանդացին բավական թեական է հարցադրում: Փաստորեն նրա առաջարկությունը ճիշտ է, բայց ոչ փոխանակ «մի»-ի: 1904 թ. հրատարակության «զանգզայութիւնդ»-ի դիմաց պատառիկն ունի «զանգզայ աշութիւն յիմարս», որ հետաքրքիր է իբրև տարընթերցանության փաստ, թեև ըստ իմաստի նույնական:

8. «զոր արթուն և քաջ նահատակն Վարդան և նոցունց նմանիքն, որք ոչ կարացեալք այսպիսի խաբէութեան ծառայել՝ բողոքէին ձեզ հանապազօր, թէ սուտ են պաշտամունքդ ձեր և անմտաց վարդապետութիւնք և չլսէիք» ($80_{37}—81_{2}$ ):

Նախապես դիտենք, որ «զոր արթուն և քաջ նահատակն» հատվածը պատառիկում չի ներկայացված՝ տողի անկման հետևանքով: Թյուրիմացություն պետք է համարել «նոցունց» բառի գոյությունը, որովհետև մինչև այդ վկայակոչված է «արթուն և քաջ նահատակն Վարդան», իսկ խոսքը նրա նմանների մասին է և ոչ՝ նոցունց նմանների: Պատառիկը պահպանել է ճիշտ ու նախնական ընթերցումը՝ «նորին»: Նախընտրելի ենք համարում նաև պատառիկի «հանապազ»-ը, թեև դրանով բուն տեքստը որևէ իմաստային փոփոխության չի ենթարկվում (հանապազօր):

Ըստ պատառիկի, «անմտաց»-ից առաջ պետք է դրվի «մարդոց» (մարդոց անմտաց), որ միտքն ավելի պարզ է դարձնում:

9. «զի բռնութիւնՙ զիրաւունս ոչ տան ճանաչել, որպէս և այժմ»($81_{2-3}$):

Նախ արձանագրենք, որ «զի»-ի փոխարեն պատառիկում ունենք «վասն զի», իսկ ապա, դատելով ողջ շարադրանքից, «բռնութիւնք» հոգնակի ձևի անհրաժեշտություն չկա, քանի որ առհասարակ բռնության է վերաբերում, այդ պատճառով էլ պատառիկի «բռնութիւն» եզակին ավելի տեղին ու նախընտրելի է: Հարկ չկա բացատրելու, որ ինքնին կվերանայվի և «տան»-ը, դառնալով «տա», ինչպես որ կա պատառիկում: Ի դեպ, վերջինիս մեջ բնագիրն ավելի որոշակի ու ավարտուն է. գիտական հրատարակության «որպէս և այժմ»-ի դիմաց այստեղ կարդում ենք. «որպէս և այժմդ իսկ չճանաչէք»: Վերջին բառը կրկնություն համարել չենք կարող, քանի որ արդեն դիմավոր ձևն է գործած-

ված, իսկ հատվածի բուն նպատակն էլ այդ է՝ այժմ էլ եք բռնություն գործադրում, ուստի իրավունք չեք ճանաչում: Մասնակի սրբագրումներով, բերված հատվածը կլինի. «Վասն զի բռնութիւն զիրաւունս ոչ տա ճանաչել, որպէս և այժմդ իսկ չճանաչէք»:

10. «Յաղագս որոյ ոչ հանդուրժեալք՝ ետուն զանձինս իւրեանց ի մահ և պատժեցան, որոց և մեք քաջալերիչք էաք և արդարև ճշմարիտ վարդապետք նոցա» ($81_{3-5}$):

Թեև պատառիկի առաջին տողը չի պահպանվել, այնուամենայնիվ, կարող ենք ասել, որ այնտեղ որոշ տարընթերցում եղել է. այդ որոշակի երևում է «-ցեալք» բառակեսից, որ ամբողջության մեջ պիտի լիներ «խոստացեալք», իսկ նման պարագայում միանգամայն հասկանալի է «հանդուրժել» (գրված է՝ հանդուժել) անորոշ ձևի գործածությունը: Որևէ սկզբունքային բան չենք տեսնում «իւրեանց»-ի լինել-չլինելու մեջ: Իբրև շատ ավելի վաղ շրջանի ձեռագրի ընթերցում բառիս չլինելը կարելի է նախնական համարել: Նույնը չի կարելի ասել շարունակության մասին. «որոց և մեք քաջալերիչք էաք»-ը բավական անորոշ է, մինչդեռ հեղինակի խոսքը նրանց գործի (=չհանդուրժելու, նահատակության) մասին է, ինչպես որ գտնում ենք պատառիկում՝ «որոց գործոց և մեք քաջալերիչք եաք և զաւրացուցիչք»: Եթե հիշենք, որ այս խոսքերն ասողը «ամենասուրբ երէց Ղեւոնդն» է, ապա հասկանալի կդառնա և «զաւրացուցիչք» լինելը, ինչպիսիք իսկապես էին Ղևոնդն ու Ղևոնդյանք: Շարունակության մեջ բնագրային խաթարում է տեղի ունեցել: Փարպեցու խոսքը ոչ թե «արդարև ճշմարիտ վարդապետք» լինելուն է վերաբերում, այլ «արդար ուսուցիչք և ճշմարիտ վարդապետք» հանդիսանալուն, ինչպես և կա նորահայտ պատառիկում: Խաթարումն առաջացել է շատ սովորական ճանապարհով. ընդօրինակողը վրիպմամբ բաց է թողել «ուսուցիչք»-ը և ակամայից ստացել «արդարև» (արդար+եւ): Հետագա ընդօրինակությունների ժամանակ այլևս ոճական հարթեցում է տեղի ունեցել, որը և հասցրել է գիտական հրատարակությունում առկա ձևին: Հարկավ, անհրաժեշտ է սրբագրել հատվածը:

11. «Եւ ասացեալ զայս ամենայն սրբոյ առն աստուծոյ Ղեւոնդի՝ որպէս ընդ մի բերան գոչեցին սուրբ քահանայքն մեծաձայն բարբառով և ուրախ եղեն յոյժ» ($81_{6-8}$):

Հայտնի է, որ վաղ միջնադարյան բնագրերի հետագա փոփոխության պատճառներից մեկը լուսանցագրությունների ներառումն է բնագրի մեջ: Ներկա դեպքում գործ ունենք հենց այդպիսի բացորոշ լուսանցագրության հետ՝ «զայս ամենայն սրբոյն առն աստուծոյ Ղեւոնդի», գրված՝ Ղևոնդ երեցի խոսքի վերջը շեշտած լինելու համար: Պատառիկը զերծ է այդ ընդմիջարկությունից, և չպահպանված մեկ տողում կարող էր տեղավորվել միայն «Եւ ասացեալ, որպէս ընդ մի»: Այս տողի առկայությունը պարզորոշ է դառնում հաջորդ տողի սկսվածքից՝ բերան գոչեցին..., իբրև «ընդ մի բերան»-ի շարունակության:

Հաջորդ լրացում-ճշգրտումը սոսկ բառական է և ոչ էական. «սուրբ քահանայքն»-ի փոխարեն պատառիկը տալիս է «ամենայն սուրբ քահանայքն», «ուրախ եղեն յոյժ»-ի փոխարեն՝ «ուրախ եղեն»: Սրանք ապացուցելի ճշգրտ-

տումներ չեն, քանի որ որևէ երանգ չեն փոխում, բայց որովհետև գտնում ենք գիտական հրատարակության հիմք ձեռագրից շուրջ 600—700 տարի առաջ գրված պատառիկում՝ ընդունելի ու նկատելի են։

12. «Եւ լուեալ զմեծաբարբառ զովութիւն սրբոցն, և զերկրումն երեւաց նոցա տեսեալ անօրէն Միհրներսեհի և այլ աւագանւոյն Արեաց, որ նստէին առաջին նորա՝ ի ցասումն բարկութեան եղեալ, ասէ ցնոսա» ($81_{8-11}$)։

Սույն հատվածում էական փոփոխությունների անհրաժեշտություն չկա, իսկ պատառիկի ունեցած տարբերությունները աննշան են. այստեղ հրատարակության «անօրէն Միհրներսեհի» դիմաց առկա է «անաւրէն իշխանին Միհրներսեհ» (գրված է՝ Միրհներսեհ), որ առումով ավելի հարազատ է շարունակությանը՝ «աւագանւոյն»։ Փարպեցին այսպիսի արտահայտություններ ուրիշ հատվածներում էլ ունի, այսպես՝ «Եւ լուեալ... հազարապետին Արեաց Միհրներսեհի, և զամենայն դրանն աւագանւոյն...» (էջ $79_{22-24}$)։

Էական չէ նաև «արեաց» բառի գոյություն-չգոյությունը. պատառիկը այն չունի։ Կարծում ենք, որ ելնելով Փարպեցու մանավորեցման սկզբունքից, կարելի է համարել բնագրային, իսկ չգոյությունը պատառիկում՝ երբեմնի գրչական վրիպման արդյունք։

Միակ համեմատաբար կարևոր տարբերությունը «զրգռեալ» թե «եղեալ» բառերի մեջ է. ո՞րն է ճիշտ՝ «ի ցասումն բարկութեան եղեալ», թե՞ «ի ցասումն բարկութեան զրգռեալ»։ Դատելով երկախոսությունների՝ նախորդ հատվածների գոյության փաստից՝ նախընտրելին «զրգռեալ»-ն է, քանի որ մինչ այդ բառերի մեջ է. ո՞րն է ճիշտ՝ «ի ցասումն բարկութեան եղեալ», թե՞ «ի ցասումն մեջ։

Ուրեմն, քիչ թե շատ կարևոր առաջարկելիք փոփոխությունը բերված հատվածում «իշխանին» բառի մուծումն է բնագիր և «եղեալ»-ի փոխարինումը «զրգռեալ»-ով։

13. «Ոչ հրամայեն մեզ օրէնքն մեր ցասնուլ ումեք, մինչ չև ինչ լուեալ ի բերանոյ նորա. այդ՝ զուարթացեալս իմն տեսաք զձեզ ընդ խօսս աշխարհակորուսիդ այդորիկ...» ($81_{11-13}$)։

Վկայակոչված հատվածի միտքը միանգամայն հասկանալի է, սակայն, կարծում ենք, «մինչ չև ինչ լուեալ ի բերանոյ նորա»-ն ավելի հստակ ու մեկին կլիներ, եթե «լուեալ»-ից հետո ունենայինք «իցէ». դրանով և՛ քերականորեն, և՛ իմաստային առումով բնագիրը պարզ կհնչեր։ Բարեբախտաբար պատառիկը այդ ընթերցումն ունի, որը և պետք է մուծվի բնագիր։ Սակայն նույնը չենք կարող ասել հաջորդ տարբերության մասին։ Միհրներսեհը Ղևոնդ երեցին հարցնում-հանդիմանում է, թե «ընդ խօսս աշխարհակորուսիդ» ձեզ «զուարթացեալ իմն տեսաք», որ նշանակում է՝ մի տեսակ զվարթացած, դրեթե զվարթացած, նույնիսկ (անգամ) զվարթացած։ Ըստ բնագրի «իմն»-ի գործածությունը միանգամայն տեղին է, իսկ պատառիկի «զուարթացեալս իմ»-ը (իմա՝ ես զվարթացեալս)՝ ակներև սխալ, քանի որ ստորոգյալը հոգնակի է (տեսաք), ուրեմն այդպես ընկալելու համար «մեր» պիտի ունենայինք։

*Համեմատաբար էական այլընթերցում ունենք (ճիշտը՝ պիտի ունենայինք) «աշխարհակորուսիդ» բառից հետո: Այստեղ կարդում ենք. «ընդ խաւս աշխահակորոյս կոր...», որ պիտի շարունակվեր «կործանումի այգորիկ»: Թե ի՛նչ նորություն կբերեր հիշյալ շարունակությունը՝ դժվար է ասել: Դատելով «աշխարհակորուսիդ» և «աշխա[ր]հակորոյս» բառերի վերջավորության տարբերությունից, կարելի է ենթադրել, որ պատառիկի տեքստում մի փոքր ավելի նկարագրական արտահայտություն է եղել:*

*Այսպիսով, հիշյալ ճշգրտումները ի մի բերելով՝ կարելի է Փարպեցու պատմության հատվածը սրբագրել այսպես.*

*«...և դարձեալ, յորմէ ծնանի՝ զնոյն ուտել անխնայ և ապականել ոչ պատկառէ: Արդ, յամենայն նիւթս հուր, ապա ուրեմն՝ ամենայն նիւթք յերկրի աստուածք. ապա թէ այդպէս գիտէք, որպէս և էդ իսկ և տեսանէք, ընդէ՞ր կուրացեալ մտաւք զկէս մասն յաստուածոցն պատուեալ ի շքեղութեան գործ մատուցանէք, զկէսն՝ ծախեալ թշնամանէք: Որպէ՞ս յաղիւսոյ և ի քարանց ի կիսոյն ապարանս և սենեակս թագաւորաց շինէք, և ի կիսոյն՝ որմ մնատանց և դաշտանատանց կարգեալք յարինին: Որպէ՞ս ի միոյն արծաթոյ (?) հանդերձս մեծապայծառս յարինէք, ընդ նմին՝ խաւղամանս և խլնանոցս արարեալ կազմէք: Հրով՝ աստուածոցն զոչխարս և զարջառ անուանեալս, ի ձէնջ պատուածս խորովէք և եփէք, ի ջրոց կիսոցն՝ զդաշտանս և զթարախս վիրաւորաց և զաղբս լուանալք և զկէսն՝ առանձինն և կամ խառնեալ ընդ գինի, ըմպէք յոտս մարդկան (?), և ոչ սոսկալք և զարհուրիք:*

*Եւ զի մի՛ եւ մի բատ միոջէ հարկաւորիցիմք ասել և կամ թուել զանզգայ ապշութիւն յիմարս, զոր արթուն և քաջ նահատակն Վարդան և նորին նմանիքն, որք՝ ոչ կարացեալք այսպիսի խաբէութեան ծառայել, բողոքէին ձեզ հանապազ, թէ՝ սուտ են պաշտամունքդ ձեր և մարդոց անմտաց վարդապետութիւնք: Եւ չլսէիք, վասն զի բնութիւն զիրաւունս ոչ տա ճանաչել, որպէս և այժմդ իսկ չճանաչէք: Յաղագս որոյ ոչ խոստացեալք հանդուրժել՝ եատն զանձինս ի մահ և պսակեցան, որոց գործոց և մեր բաջալերիչք էաք և զաւրացուցիչք՝ որպէս զարդար ուսուցիչս և զճշմարիտ վարդապետս:*

*Եւ ասացեալ՝ որպէս ընդ մի բերան, զավեցին ամենայն սուրբ քահանայքն մեծաձայն բարբառով և ուրախ եղեն: Եւ լուեալ զմեծաբարբառ զավութիւն սրբոցն և զբերկրումն երեսաց նոցա տեսեալ անաւրէն իշխանին Միհրներսեհ և այլ ատազանւոյն Արեաց, որ նստէին առաջի նորա՝ ի ցասումն բարկութեան զրգռեալ, ասէ ցնոսա. «Ոչ հրամայեն մեզ աւրէնքն մեր ցանուլ ումեք, մինչ չե ինչ լուեալ իցէ ի բերանոյ նորա: Արդ՝ զաւրթացեալս իմն տեսաք զձեզ ընդ խաւսս աշխարհակորոյս կործանումիդ այգորիկ...»:*

*Հին պատառիկների ուսումնասիրությունը ուշագրավ է նաև հայոց լեզվի պատմության առումով: Այստեղ ակնկալելի են բառագանձային նորույթներ, քերականական ինքնատիպություններ, վաղ շրջանի բարբառայնություններ և այլն: Պարզվում է, որ Փարպեցու Պատմության այս ոչ մեծածավալ պատառիկը նշանակալի հետաքրքրություն է ներկայացնում և նշված խնդրի առնչությամբ: Ուսումնասիրությունն այստեղ բացահայտեց այնպիսի նոր բառեր կամ*

բառաբարդություններ, որոնք արձանագրված չեն մեր առավել հեղինակավոր բառարաններում: Ստորև վկայակոչենք այդ բառերը:

**Սնատուն.** ՆՀԲ-ը և Մալխասյանցը չունեն, բառս գոյությունն առաջին անգամ է արձանագրվում: Դատելով գործածության տեղից՝ որոշակի իմաստ ունեցող տերմին է (ի կիսոցն որմ սնատանց և...): Փոխարինում է Փարպեցու գիտական հրատարակության մեջ եղած «տուն աղտեղութեան» հասկացությանը: Դիտելու է, որ «աղտեղութիւն» բառը գործածական է այլևայլ իմաստով՝ աղտ, աղտեղություն, արատ, աղբ, անսրբություն, պղծություն (ՆՀԲ, I, 45): Սակայն չենք կարող այս նշանակություններից որևէ մեկը դիտել իբրև «սին» բառի լիարժեք հոմանիշ, որ նշանակում է՝ սնոտի, ունայն, թափուր, զուր, դատարկ, նանիր: Թերևս կարելի է ենթադրել, թե «սնատուն» ասելով ինչ-որ պաշտամունքային կառույց, տեղի նկատի ունի, որին գերադասում է «սին» հորջորջել: Բայց նման ենթադրությունը տեքստից չի բխում. այստեղ «սնատունն» ու «դաշտանատունը», երկուսն էլ իբրև «աղտեղության տուն», հակադրված են «ապարանքներին» ու թագավորաց կամ իշխանաց «սենյակներին», որոնք նույն քարով են կառուցվում: Ուրեմն՝ խոսքը կոնկրետ նշանակություն ունեցող հաստատության, տերմինի մասին է: Քանի որ Պարսկաստանում «դաշտանատներ» իրոք կային, ուրեմն եղել են նաև «սնատներ»: Նախապես մենք նույնիսկ հակված էինք կարծելու, թե գործ ունենք ոչ թե «սին», այլ «սեն» բառի հետ, որ մեկ անգամ գործածված է մեր մատենագրության մեջ և նույնանում է վրացերեն სენი-ին (ախտ. հիվանդության իմաստով)[30]: Իհարկե, շատ հարմար կլիներ «սնատունը», հասկանալ իբրև «ախտատուն», «հիվանդատուն», «բորոտանոց» և այլն, բայց ինչպե՞ս կարող էր հայերենում «սեն»-ը «սն» դառնալ, ինչ վրացերենում բնականոն է (հմմտ. სნეული): Կարծում ենք, որ բառս դեռ կարոտ է իմաստի ճշտման:

**Դաշտանատուն.** Վերոհիշյալ բառարանները այսպիսի բառ չգիտեն, թեև նրա բաղադրիչները առանձին-առանձին քաջ հայտնի են. ՆՀԲ-ում (I, 595) և այլուր վկայակոչված է և Փարպեցու բնագիրը, ուր այս բառը հանդիպում է երկու անգամ: Ի տարբերություն նախորդի, այս բառի իմաստը շատ որոշակի է, և նորը ոչ թե բառիմաստն է, այլ ինքը բառաբարդությունը (գիտ. հրատ. մեջ ունենք՝ տուն դաշտանաց, պատառիկում՝ դաշտանատուն)[31]:

**Խաւղաման.** Նախորդի նման բաղադրիչներով հայտնի բառ է, իսկ բառաբարդումը՝ անծանոթ բառարանագիրներին: «Խաւղ»-ը (խօղ) նույն «խօխ», «խուխ» բառն է (բարբառներում՝ «խորխ»): «Խաւղ»-ը բառս ոչ հաճախադեպ գործածվող ձևն է, դրանով իսկ ուշագրավ[32]: Ինչպես արդեն նշել

---

[30] ქართლის ცხოვრების ძველი სომხური თარგმანი, თბ., 1955, გვ. $218_4$, հմմտ. Հ. Աճառյան, ՀԱԲ, VI, 182: Այստեղ տրված ստուգաբանությունը (თუ-ფერი) համոզիչ չէ (այդ մասին գրում է ինքը Հ. Աճառյանը, տե՛ս նրա՝ Հայոց լեզվի պատմություն, II, Երևան, 1951, էջ 225), հմմտ. Ի. Աբուլաձե, Քարթլիս ցխովրեբայի կամ Վրաց պատմության հին հայերեն թարգմանությունը, «Գիտ. նյութերի ժողովածու», № 1, 1941, էջ 39:

[31] Հ. Աճառյանը «տուն դաշտանաց»-ը բացատրում է իբրև «արտաքնոց» (ՀԱԲ, II, 412), որ համոզիչ չէ:

[32] Հմմտ. Նորայր Բյուզանդացի, Հայկական բառաքննութիւն, էջ 76 (№ 72):

ենք, «խաւղաման» ունեցող նախադասությունը Փարպեցու հրատարակության մեջ չկա, իսկ քանի որ այլուստ հայտնի չէ, ապա առ այսօր հայտնի գործածության միակ դեպքն է։ Դժբախտաբար, մենք հնարավորություն չունենք ճշտելու, թե ամանիս գոյությունը հայտնի՞ է պահլավերենին կամ հնագիտությանը, ինկայե՞ս խաւղ||խուխ-ը ծագում է պրսկ. خوك-ից[33]։ Խ(ը)լճանոց. Գործածված է «խաւղաման»-ի հետ նույն նախադասության մեջ. իբրև հավասարապես աղտեղի, անարժան աման։ Առաջին կեսը «խլնիք» կամ «խլինք» բառն է, եզական ձևը՝ խլին։ Բառարաններին «խ(ը)լնանոց» բառն անծանոթ է. «ը» գաղտնավանկի բացումը պայմանավորված է այլ ձայնավորների չգոյությամբ և ոչ տողադարձով կամ գրչության հետ կապված այլ պարագայով։

Այսպիսով, վկայակոչված չորս բառն էլ անծանոթ է մեր բառարանագրությանը և նորույթ լեզվի բառագանձում, կամ, ինչպես լեզվաբանական գրականության մեջ է ասվում՝ նորագյուտ բառ։

Այժմ անդրադառնանք բարբառային ձևերի գործածության փաստին։ Վաղ շրջանի պատառիկներում, հասկանալի պատճառով, այդպիսիք քիչ են սպասելի, բայց այնուամենայնիվ՝ կան։ Արդեն նշել ենք, որ հրապարակի վրա եղած «Յաղագս որոյ ոչ հանդուրժեալք՝ եառն վանձինս իւրեանց ի մահ...» ($81_{3-4}$) նախադասությունը մեր պատառիկում այլ խմբագրությամբ է ներկայացված՝ «[Յաղագս որոյ ոչ խոստա]ցեալք ճանտուժել՝ եառն զանձինս ի մահ...» (I, 1)։ Թե ինչում է կայանում շարագրական տարբերությունը՝ վերևում նշվեց։ Այստեղ ուշագրավը «հանտուժել» ձևն է։ Բառս վկայված է V դարի հուշարձաններով՝ իբրև «հանդուրժել»[34], իսկ Փարպեցու պատառիկում, գրավոր մատենագրության մեջ առաջին անգամ, հանդես է գալիս դ>տ խլացմամբ և «ր»-ի անկմամբ՝ ճանտուժել։ Արդ, ինչպե՞ս բացատրել այս փոփոխությունը։ Կարող է լինել երկու մեկնաբանություն. բառիս ստուգաբանությունը տակավին վերջնականապես ճշգրտված չէ, իսկ ենթադրություններից մեջ կա և այսպիսին՝ «հան մասնիկով դուժ <դուժ=սանս. դուշ «հանդարտիլ, խաղաղիլ» բառից»[35]։ Եթե այս վարկածը հաստատվեր, ապա «հանտուժել» ձևը կարելի էր դիտել իբրև առավել հնագույն (արխայիզմ), զուգահեռներ փնտրելով միայն դ>տ խլացման համար։ Սակայն, մեր համոզմամբ, այստեղ կարող է առաջադրվել և երկրորդ հավանական վարկած. «կ» ճյուղի բարբառների որոշ խոսվածքներում (Ախալքալաքի) այսօր էլ «հանտուժել» են ասում, ուր օրինաչափ է ինչպես դ>տ, այնպես էլ ր>— հնչյունափոխությունը։ Մեր մատենագրության պատմության մեջ և վիմագիր արձանագրություններում բարբառային ձևերի օգտագործման բազմաթիվ օրինակներ են հայտնի, որոնց Ն. Մառը вульгарная форма էր կոչում։ Զարմանալու ոչինչ չկա, եթե խորհենք, որ Փարպեցու հնագույն պատառիկում ավանդված ենք գտնում հենց բարբառային հնչումը։ Այս նույն տեքստում առկա է և մեկ այլ բառի ինքնատիպ գրություն՝ աշխարհակորոյս-ի փոխարեն աշխահակորոյս։ Իհարկե, դյուրին կլիներ այն ընդունել իբրև գրչի սովորա-

---

33 Համտ. Հ. Աճառյան, ՀԱԲ, III, 654։

34 Վկայակոչությունները տե՛ս ՆՀԲ, II, 45։

35 Տե՛ս Հ. Աճառյան, ՀԱԲ, IV, 125։

կան վրիպում, դրանով իսկ՝ հարցը սպառված համարել։ Բայց տակավին քննելի է, թե նորից բարբառային գրության հետ գործ չունե՞նք, քանի որ այս օրինակը եզակի չէ։ Տիմոթեոս Կուզի «Հակաճառութեան» ձեռագրում ևս բազմիցս հանդիպում ենք «աշխահ» գրությանը[36], որ կրկնված են գտնում նաև Փիլոն Եբրայեցու «Ճառք»-ում[37]։ Ընդ որում, երկու հեղինակի հայերեն թարգմանության ձեռագրերում էլ գրության այս ձևը պատահական չէ, քանի որ երբեմն նույն էջում ունենք «աշխարհ» և «աշխահ», ավելին՝ Փիլոնի «Կեանք իմաստնոց» ճառի գրիչը նախապես գրել է «աշխարհ», իսկ հետո դարձրել «աշխահ», հրատարակիչների խոսքով «ջնջելով զնախ գրեալ ր տառ» (էջ 33, ծան. 1)։ Նման գրություն հատուկ է «Ճառքի» համեմատվող ձեռագրերից մեկին (տե՛ս էջ 143, ծան. 4)։

Ուրեմն, կարելի է վստահ ասել, որ մեր պատառիկի «աշխահակորոյս»-ը պատահական չէ և իր զուգահեռն ունի այլ ձեռագրերում։ Իսկ քանի որ այդ ձեռագրերը տարբեր ժամանակների ու գրիչների արտագրանք են, ապա բառիս այս ինքնատիպ գրությունը բացատրելի է միայն պատմական Հայաստանի որոշ գավառների բարբառային ինքնատիպությամբ։ Դժբախտաբար, հիշյալ երեք անկախ աղբյուրների ձեռագրի գրչության վայրի մասին քիչ գիտենք, այլապես հարցը ինքնին կմասնավորվեր, պարզելով թե՛ որ բարբառին հատուկ լինելը, թե՛, մանավանդ, պատառիկիս որտեղ գրվելու պարագան։ Նկատառելի է միայն, որ Կուզի «Հակաճառության» ձեռագիրը (այժմ՝ Մատենադարան, № 1958) X—XI դարի մագաղաթյա հնագույն գրչագրերից է։ Այստեղից բխում է, որ լեզվական իրողությունը գրառված է վաղ շրջանի ձեռագրերում և որ, նաև ըստ գրչության, մեր պատառիկն ու «Հակաճառության» ձեռագիրը իրար ժամանակակից են։

Ի վերջո, պատառիկներ ուսումնասիրելիս անհրաժեշտ է անդրադառնալ և կետադրության ու տրոհության նշաններին, քանի որ այդ ամենը կարող է օգտակար լինել գրչության ժամանակի հետ կապված հարցեր արծարծելիս[38]։ Փարպեցու պատմության այս ոչ մեծ պատառիկը հարուստ է և կետադրության նշաններով։ Ընդամենը մեկ թերթում գործածված են այնքան նշաններ, որքան երբեմն դժվար է լինում գտնել հին ձեռագրի մի պրակի մեջ։ Պարբերության վերջում մեկ անգամ գործածված է երկու կետանոց վերջակետ, գրված վերջին տառից մեկ տառաչափ հեռու և տողի վերին եզրին հավասար. «...ԵՒ ՉՃՇՄԱՐԻՏ ՎԱԴԱ/ՊԵՏՍ։ (I 1բ)։ Նույն դիրքով հանդիպում է և միջակետի գործածություն (ՊԸ/ՍԱԿԵՑԱՆ., I 1բ)։ Սակայն կան և այլ դեպքեր. մեկ կետը դրվում է նաև տողի ստորին եզրին (Ի ՅԱ[ՍՈՒՄՆ ԲԱՐԿՈՒԹԵԱՆ ԳՐ]ԳՌԵԱԼ. I 2ա) կամ՝ բուն տողամիջում (ՅԱ/ՄԵՆԱՅՆ ՆՒԻԹՍ ՀՈՒՐ., ԱՅԴՊԷՍ ԳՒՏԷՔ. II 1բ, ԽԱՒՂԱՄԱՆՍ. ՎԻՐԱՒՈՐԱՑ. II 2ա, ԽԱԲԷՈՒԹԵ/ԱՆ ԾԱՌԱՅԵԼ. ԵՒ ՉԼԱՅԻՔ. II 2բ), ընդ որում նախավերջին օրինակի դեպքում միջակետը քառակուսի տեսք չունի, այլ՝ կլոր կետ։ Պատառիկում երեք անգամ ստորակետ է հանդի-

---

36 Տիմոթէոսի եպիսկոպոսապետի Աղեքսանդրեայ Հակաճառութիւն առ սահմանեալսն ի ժողովոյն Քաղկեդոնի, ի լոյս ընծայեալ աշխատութեամբ Կարապետ ծ. վարդապետի և Երուանդ վարդապետի, Էջմիածին, 1908, էջ $216_4$, $297_{10}$, $300_3$ և այլն (հմմտ. Հ. Աճառյան, ՀԱԲ, I, 396)։

37 Փիլոնի Եբրայեցւոյ Ճառք..., Վենետիկ, 1892, էջ 33, 143։ Հմմտ. Հ. Աճառյան, անդ։

38 Միջնադարյան կետադրությանը վերաբերող նախնական հաղորդում, տե՛ս Հ. Մխիթարյան, Կետադրական նշանները հայերենում, Հ. Ա., 1971, № 4—6, էջ 190—206։

*պում (ՅԱՍՆՈՒԼ ՈՒՄԵՔ [ՄԻ]/ՆՉ, I 2ա, ԱՄԵՆԱՅՆ ՆԻԻ/ԹՔ, II 1բ, ՆՄԱ/-[ՆԻՔՆ], ՈՐՔ II 2բ)։*

*Առոգանության նշանի գործածության հանդիպում ենք մեկ անգամ, որ երկու տառի տարածություն ծածկող նշան է, դատելով տեղից՝ շեշտի կամ բացականչականի նշանակությամբ, աջից ձախ վայրընթաց թեքությամբ (ԵԻ ՁԻ/ՄԻ ԵԻՍ ՄԻ ԸՍՏ ՄԻՈՋԷ I 1ա)։*

*Այս նշանների համադրությունը այլ պատառիկներում ու հին ձեռագրերում հանդիպող նշանների հետ նկատելիորեն կօգնի նրանց գործածության պատմությունն ուսումնասիրելուն, մանավանդ երբ նկատի առնվեն հայոց հին քերականների աշխատություններով ավանդված սահմանումներն ու բնութագրումները։*

П. М. МУРАДЯН, К. Н. ЮЗБАШЯН

## НОВООТКРЫТЫЙ ФРАГМЕНТ «ИСТОРИИ» ЛАЗАРА ПАРБЕЦИ

(Резюме)

Настоящий фрагмент «Истории» Лазара Парбеци сохранился в виде защитных листов рукописи А-82 Института востоковедения АН СССР в Ленинграде. Рукопись датируется XIV в. (до 1338 г.), защитные листы — X—XI вв. Текст Лазара Парбеци написан на пергамене, письмо — прямоугольный еркатагир. Отрывок соответствует стр. 80 33—37, 38—81 5, 7—13 издания 1904 г. Статья содержит публикацию фрагмента, анализ разночтений и реконструкцию текста в пределах данного отрывка.

Новооткрытый фрагмент позволяет внести существенные коррективы в имеющийся текст, содержит слова, не учтенные в глоссариях, и диалектизмы. Фрагмент изобилует знаками пунктуации.

P. M. MOURADIAN, K. N. YOUZBACHIAN

## LE FRAGMENT DERNIÈREMENT DÉCOUVERT DE l'„HISTOIRE" DE LAZARE PARBETSI

(Résumé)

Le présent fragment de l'Histoire de Lazare Parbetsi a été conservé sous forme de feuille de garde du manuscrit A-82 de l'Institut d'Orientalisme de l'Académie des Sciences de l'URSS à Léningrad. Le manuscrit date du XIVe siècle (avant 1338), pages de garde du Xe—XIe siècles. Le texte de Lazare Parbetsi est écrit sur du parchemin, écriture: erkataguir rectangulaire. Le fragment correspond aux pages 80 33—37, 38 et 81 5, 7—13 de l'édition de 1904. L'article comporte la publication du fragment, l'analyse des variantes et la reconstitution du texte dans les limites du fragment en question.

Ce nouveau fragment permet d'apporter d'importants correctifs au texte existant, il comporte des mots non cités dans les glossaires et des formes dialectales. Les signes de ponctuation y abondent.